Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ



# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ



№ 17 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1956

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։



# ԶՐՈՒՅՑ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

ՍՏ. ՍՏԵՓԱՆՅԱՆ

*Հայրենասիրությունը՝ աշխատավորների սերն ու նվիրվածությունն է Հայրենիքին, նրա պատվի, ազատության և անկախության համար անձնուրաց պայքարի պատրաստակամությունը, անդուլ հոգատարությունը Հայրենիքի ծաղկման ու բարգավաճման նկատմամբ։ «Հայրենասիրությունը,— նշել է Վլադիմիր Իլյիչ Լենինը,— առանձնացված հայրենիքների՝ դարերով ու հազարավոր տարիներով ամրացված ամենախորն զգացմունքներից մեկն է»։*

*Սովետական հայրենասիրությունը դա նոր, բարձր տիպի հայրենասիրություն է, որ ծնունդ է առել Հոկտեմբերյան ռեվոլյուցիայի հաղթանակի շնորհիվ, ամրապնդվել է սոցիալիստական շինարարության տարիներին և էլ ավելի է ծաղկում կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում։ Սովետական հայրենասիրությունը նշանակում է սեր դեպի Սովետական Սոցիալիստական Հայրենիքը, որտեղ շահագործումից ազատագրված աշ-*





խատավորներն իրենց երկրի իսկական տերերն են։ Սովետական հասարակության մեջ աշխատավորների սերը դեպի հայրենիքը գիտակից սեր է, որը լուսավորված է մեր ժողովրդի նպատակների և խնդիրների ըմբռնմամբ և անխզելիորեն կապված է մասսաների կողմից կոմունիզմի կառուցմանը գիտակցորեն մասնակցելու հետ։

Սովետական հայրենասիրությունը չի պարփակված մեկ ազգի նեղ շրջանակներում, նա իր էությամբ ինտերնացիոնալ է։ Սովետական հայրենասիրությունը բացառում է նացիոնալիզմը և հենվում է մեր երկրի բոլոր ազգերի եղբայրական համագործակցության վրա։ Սովետական հայրենասիրության հիմքում ընկած է ՍՍՌՄ ժողովուրդների անխախտ բարեկամությունը, նրան խորթ են ազգային կամ նացիոնալիստական նախապաշարմունքները և հատուկ են խորին նվիրվածությունն ու հավատարմությունն իր հայրենիքին։ Հայրենասիրությունը մեր երկրի ժողովուրդների ինտերնացիոնալ եղբայրության զգացմունքն է։ Սովետական հայրենասիրությունը ելնում է այն բանից, որ չի կարելի լինել ինտերնացիոնալիստ, առանց հարգելու և առանց սիրելու իր սեփական ժողովրդին։ Իր ինտերնացիոնալ բնույթով սո-



վետական հայրենասիրությունը մեր երկրի ժողովուրդներին չի անջատում, այլ համախմբում է միասնական եղբայրական ընտանիքում, ներդաշնակորեն զուգակցում է ժողովուրդների ազգային տրադիցիաները և ՍՍՌՄ բոլոր աշխատավորների ընդհանուր կենսական շահերը։

Սովետական հայրենասիրության հզոր և անհաղթահարելի ուժը առանձնապես վառ կերպով հանդես եկավ Հայրենական Մեծ պատերազմում։ Մեր ժողովրդի հիշողության մեջ վառ կմնան Գաստելլոյի և Մատրոսովի, Զոյա Կոսմոդեմյանսկայայի և Սմիրնովի, Հունան Ավետիսյանի և Նելսոն Ստեփանյանի, գվարդիական-պանֆիլովականների, Կրասնոդոնի երիտասարդ գվարդիականների և Հայրենիքի հազարավոր փառապանծ զավակների հերոսական, անմահ անունները։

Մեր երկրի ժողովուրդների հայրենասիրության ուժն այն է, որ այդ ժողովուրդներն ունեն մի վեհ նպատակ, հանուն որի նրանք ապրում և աշխատում են։ Այդ նպատակն է իրագործել կոմունիստական պարտիայի և սովետական կառավարության քաղաքականությունը, որն ուղղված է ժողովրդի բարօրության նպատակին և ապահովում է մեր երկրում կոմունիզմի կառուցումը։

Կոմունիզմի կառուցման գործում մեր երկրի համար այժմ կարևորագույն խնդիր է գյուղատնտեսության հետագա վերելքը։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի վերջին պլենումների որոշումներում նշված է գյուղատնտեսության բոլոր ճյուղերի շեշտակի վերելքի ծրագիրը։

Պարտիայի Կենտկոմը և Սովետական կառավարությունը անհրաժեշտ գտան բերքատվության բարձրացման հետ մեկտեղ յուրացնել 13 միլիոն հեկտար խամ և խոպան հողեր, գլխավորապես մեր երկրի արևելյան մարզերում։ Սովետական ժողովուրդների կենսատու հայրենասիրության շնորհիվ պլանով նախատեսված 13 միլիոնի դիմաց յուրացվեց ավելի քան 33 միլիոն հեկտար հող։

Պարտիայի կոչով նոր հողեր յուրացնելու համար եղբայրական ժողովուրդների հարյուր-հազարավոր զավակներ, կոմերիտականներ՝ Մոսկվայից, Ուկրաինայից, Բելոռուսիայից, Հայաստանից և այլ վայրերից իրենց հայրենասիրական պարտքն են կատարում սովետական Սիբիրի և Ղազախստանի դաշտերում։

Խամ և խոպան հողերի յուրացման շրջանում վառ հավատով, իրենց հայրենիքի հան-



դեպ մեծ սիրով լի, հնաբնակների հետ ուս-ուսի տված՝ գերազանց բերքի համար պայքարում են կոմերիտմիության 350 հազար պատվիրակներ։ Հայկական ՍՍՌ-ից խամ և խոպան հողերի յուրացման շրջաններում աշխատում են 2.900 երիտասարդներ։

Այս տարի նոր յուրացված հողերում աճեցվել է լավ բերք։ Բերքահավաքը սեղմ ժամկետում և առանց կորստի անցկացնելու համար լրացուցիչ կերպով պահանջվում են մեծ թվով աշխատող ձեռքեր։ Սովետական Միության բոլոր մասերից երկու ամիս ժամկետով 200 հազար մարդ է մեկնել բերքահավաքին մասնակցելու համար։ Միայն Սովետական Հայաստանից մեկնել են ավելի քան 1.700 հայրենասերներ, որոնք ներկայումս ակտիվորեն մասնակցում են բերքահավաքի աշխատանքներին։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը դիմել են բոլոր կոմերիտական կազմակերպություններին, ամբողջ սովետական երիտասարդությանը, կոչ անելով 1956—1957 թվականներին իրենց շարքերից առանձնացնել 400—500 հազար պատանիներ և աղջիկներ, որոնք ձեռնամուխ լինեն արևելյան շրջաններում նոր գործարանների, հիդրոէլեկտրակայանների, ածխա-

հոքերի, հանքահորերի և այլ ձեռնարկությունների, ինչպես նաև երկաթուղիների կառուցման վրա աշխատելու համար։

Բոլորին հայտնի է սովետական երիտասարդության, կոմերիտմիության կենարար հայրենասիրությունը։ Սովետական երիտասարդությունը ջերմորեն է արձագանքել պարտիայի բոլոր կոչերին, համարձակորեն գնացել է աշխատանքի ամենապատասխանատու ու դժվարին բնագավառները և պատվով է կատարել իր պարտքը Հայրենիքի հանդեպ։

Արձագանքելով պարտիայի և կառավարության կոչին, Երևանի էլեկտրատեխնիկական գործարանի մոտորային ցեխի փականագործ Կարլեն Աբրահամյանն ասաց. «Ես ամբողջ սրտով ողջունում եմ պարտիայի և կառավարության դիմումը և պատրաստակամություն եմ հայտնում մեկնելու երկրի հեռավոր շրջանները, աշխատելու այնտեղ, որտեղ պահանջում են Հայրենիքի շահերը։ Գիտեմ, աշխատանքի նոր վայրում դժվարություններ շատ կլինեն, բայց ես ուժ ու եռանդ չեմ խնայի մեր հարազատ պարտիայի, գործարանի, իմ ընկերների վստահությունն արդարացնելու համար»։

Պարտիայի և կառավարության դիմումը խանդավառությամբ ընդունվեց Երևան քա-



ղաքի պատանիների և աղջիկների կողմից։ Մայրաքաղաքի ավելի քան 700 երիտասարդներ ցանկություն հայտնեցին մեկնելու Հեռավոր Արևելք, երիտասարդական ավյունով ծնունդ տալու արդյունաբերական նոր ձեռնարկություններին։

Սովետական մարդկանց հայրենասիրական աշխատանքը հիանալի արդյունքներ է տալիս արդյունաբերության հետագա զարգացման և տեխնիկական պրոգրեսի գործում։ Ամենուրեք, գործարաններում ու ֆաբրիկաներում սովետական հայրենասերները հանդես են գալիս ռացիոնալիզատորական և նորարարական առաջարկություններով։ Երևանի Ստալինյան շրջանի արդյունաբերական ձեռնարկություններում 1955 թվականի ընթացքում արտադրության մեջ ներդրվել է 2.100 ռացիոնալիզատորական և նորարարական առաջարկություն, որի շնորհիվ ստացվել է 20 միլիոն ռուբլու օգուտ։ Ս. Մ. Կիրովի անվան գործարանում, անցյալ տարվա ընթացքում արտադրության մեջ ներդրըվել է 1.250 նորարարական առաջարկություն, որը ավել է 4 միլիոն 400 հազար ռուբլու օգուտ։

Հետաքրքրական է Սովետական Հայաստանի կոմբայնավարների հայրենասիրա-

կան աշխատանքի արդյունքը։ Ախտայի շրջանի Բջնիի ՄՏ կայանի առաջավոր կոմբայնավար Կարապետ Կարապետյանը ընթացիկ տարում բերքահավաքի միայն 9 օրում հավաքեց 147 հեկտարի բերք, նորմայով սահմանված 90 հեկտարի դիմաց. նրա կոմբայնով հնձված բոլոր դաշտերից ստացվել է բարձր բերք։ Մեր ռեսպուբլիկայի ամենախոշոր հացահատիկային շրջանի՝ Բասարգեչարի ՄՏ կայանի կոմբայնավար Ասրեա Գասպարյանը չորս աշխատանքային օրում հավաքեց 100 հեկտարի բերք։

Այսպիսով, սովետական մարդկանց սերը հայրենիքի նկատմամբ, ակտիվ, գործունյա սեր է, այն դրսևորվում է նրանց ամենօրյա աշխատանքում, կոնկրետ գործերում, աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության, աշխատանքային սխրագործությունների մեջ, կոմունիզմի համար մղվող պայքարում։

ՍՍՌՄ ժողովուրդների հայրենասիրությունը հզոր ուժով է դրսևորվում՝ պարտիայի XX համագումարի առաջ քաշած խնդիրները լուծելու, վեցերորդ հնգամյա պլանը հաջողությամբ կատարելու մեծ ու պատվավոր գործում։

---

# ՀԱՑԱՀԱՏԻԿԱՅԻՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԱՆԶԱՏ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ

Ա. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ
Ինժեներ-մեխանիկ

ՍՄԿՊ XX համագումարը վեցերորդ հնգամյակի վերաբերյալ իր Դիրեկտիվներում գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողների առաջ խնդիր դրեց՝ բարձրացնել հացահատիկի բերքատվությունը և լրջորեն պայքարել բերքի կորուստների դեմ։

Ինչպես հայտնի է, մեր երկրում հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը հիմնականում կատարվում է կոմբայններով։ Սակայն գոյություն ունեցող կոմբայնները լավ են աշխատում այն դեպքում, երբ հացահատիկը դաշտում գտնվում է մաքուր և չոր վիճակում։ Խոնավ, մոլախոտերով պատված և անհավասարաչափ հասունացած հացահատիկ լինելու դեպքում կոմբայններն աշխատում են ցածր արտադրողականությամբ և մեծ կորուստներով։

Հացահատիկի կորուստները առանձնապես մեծ են լինում բերքահավաքը ձգձգելու դեպքում։ Ապացուցված է, որ արդեն հասունացած հացահատիկի հունձն ուշացնելու ժամանակ, կորուստները յուրաքանչյուր հեկտարից հասնում են 4—5 ցենտների, իսկ որոշ դեպքերում, երբ բերքահավաքը 20 օրից ավելի է տևում, դրանք կազմում են համարյա բերքի կեսը։

Հացահատիկային կուլտուրաների բերքահավաքի ժամկետի կրճատման և կորուստների խիստ նվազեցման գործում կարևոր նշանակություն ունի անջատ բերքահավաքի կիրառումը։

Հացահատիկային կուլտուրաների անջատ բերքահավաքի էությունը կայանում է նրանում, որ բերքահավաքի ամբողջ պրոցեսը բաժանվում է երկու ինքնուրույն, սակայն իրար հետ խիստ կապ ունեցող փուլերի՝ հացահատիկի հնձի ու կալսման։

Հացահատիկը մոմային հասունացման սկզբում, այսինքն նրա լրիվ հասունացումից կամ մասսայական բերքահավաքից 5—6 օր առաջ հնձում և ծոր (լասա) են դնում շարքային հնձիչներով, այդ նպատակի համար վերասարքավորված կցվող կոմբայններով, կամ ծոր դնող խոտհնձիչներով (առաջին փուլ)։



Հնձված հացահատիկը չորանում ու հասունանում է ծորերում։ Նայած եղանակին ու ծորի հաստությանը, հացահատիկի չորացման պրոցեսը կարող է տևել 2—3 օր։ Դրանից հետո չորացած ու հասունացած հացահատիկը ծորից հավաքում են հավաքիչ հարմարանքով սարքավորված կոմբայնով և կալսում (երկրորդ փուլ)։

Անջատ բերքահավաքի ժամանակ հացահատիկային կուլտուրաները հնձում են 20—25 սանտիմետր բարձրությամբ։ Խոզանի բարձրությունը 20 սանտիմետրից պակաս լինելու դեպքում, հնձված հացահատիկի ծորը կարող է հպվել գետնին, որի հետևանքով հացահատիկը դանդաղ կչորանա և հավաքելու ժամանակ կորուստներ տեղի կունենան։ Խոզանի բարձրությունը 25 սանտիմետրից ավելի լինելու դեպքում նա կծալվի ու հացահատիկի ծորը արագ կերպով կպառկի գետնին և կոմբայնի հեդերի (հնձիչի) վրա տեղակայված հավաքիչի աշխատանքի համար դժվարին պայմաններ կստեղծվեն։

Անջատ բերքահավաքի ժամանակ առանձնապես լավ արդյունք է ստացվում այն դեպքում, երբ բույսերի խտությունը ամբողջ տարածության վրա հավասարաչափ է, իսկ ցողունների քանակը մեկ քառակուսի մետրի

վրա 300-ից պակաս չէ։ Բույսերի բարձրությունը (հասկերի հետ միասին) պետք է լինի 80 սանտիմետրից ոչ պակաս։

Շարքային հնձիչներով հացահատիկի հունձը պետք է կատարել հնձիչի լրիվ ընդգրկումով, իսկ ծայրահեղ դեպքում, երբ բարձր բերքատվության հետևանքով շատ է նաև ծղոտային մասսայի քանակը՝ հնձիչի երեք քառորդի ընդգրկումով։ Երեք քառորդից փոքր կամ կես ընդգրկումով հնձելու դեպքում փոքրանում է հարևան ծորերի միջև եղած հեռավորությունը և հնձիչի բաժանարարը կամ կցվող կոմբայնի դաշտային անիվը տրորում է հարևան ծորը։

Անջատ բերքահավաքի կիրառման հարցում առանձնապես պետք է զգույշ լինել խոնավ շրջաններում և այն կիրառել միայն լավ եղանակի դեպքում։ Երկարատև անձրևների ժամանակ բերքահավաքի անջատ եղանակ բոլորովին չի կարելի կիրառել։

Փորձերը ցույց են տվել, որ մոմային հասունացման սկզբում կատարված հունձը չի իջեցնում հացահատիկի բերքատվությունը, քանի որ հատիկի լցվելը և ձևակերպվելը այդ ժամանակ արդեն վերջացած է լինում։

Անջատ բերքահավաքի եղանակով հավաքված և կալսված հացահատիկը լրացուցիչ



չորացում չի պահանջում, այն ունենում է ավելի լավ ծլունակություն և քիչ է աղբոտված լինում մոլախոտերի սերմերով։

Անջատ բերքահավաքի առավելություններից մեկն էլ կայանում է նրանում, որ ժամանակի զգալի շահում է տեղի ունենում, որը գործնական մեծ նշանակություն ունի, քանի որ բերքահավաքի արագացումը կրճատում է կոմբայնային բերքահավաքի ժամանակաշրջանը, հետևաբար նվազում են նաև կորուստները։

Հացահատիկային կուլտուրաների անջատ բերքահավաքը գնալով մեծ ծավալ է ստանում մեր երկրի կոլտնտեսություններում և սովխոզներում։ 1953 թվականը այդ եղանակի կիրառման առաջին տարին հանդիսացավ։

1955 թվականին Սարատովի մարզի կոլտնտեսություններն ու ՄՏ կայանները, անջատ եղանակով հավաքեցին հասկավոր կուլտուրաների մոտ 15 տոկոսը, Կույբիշևի, Լիպեցկի, Բալաշովի, Ուլյանովսկի և Վորոնեժի մարզերի կոլտնտեսություններն ու ՄՏ կայանները՝ 10—12 տոկոսը։

Վերը նշված մարզերի առանձին ՄՏ կայաններ ավելի մեծ չափով կիրառեցին անջատ բերքահավաքը։ Այսպես, օրինակ, Կույ-

բիշևի մարզի Վյազովսկի ՄՏ կայանը իր կողմից սպասարկվող կոլտնտեսություններում անջատ եղանակով հավաքեց ամբողջ ցանքատարածության 47 տոկոսը։ Ստավրոպոլի երկրամասի Նովո-Ալեքսանդրովսկի շրջանի Գրիգորոպոլսկի ՄՏ կայանը միայն մեկ կոլտնտեսությունում անջատ եղանակով հավաքեց 4.500 հեկտար կամ, ամբողջ հացահատիկի 20 տոկոսը։ Այս ՄՏ կայանը կոմբայնային բերքահավաքը կատարեց մոտ 10 աշխատանքային օրում։

Կրասնոդարի երկրամասի Գրաչևո-Բալկովսկու, Նովո-Նիկոլաևսկու և այլ ՄՏ կայանների փորձը ցույց է տվել, որ անջատ բերքահավաքի կիրառման հետևանքով 2—4 ցենտներով ավելանում է յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը։

Օրլովի մարզի, Մցենսկի շրջանի «Պուտ կ կոմունիզմու» կոլտնտեսության այն ցանքատարածություններում, որտեղ բերքահավաքը կատարվել էր անջատ եղանակով, աշնանացանի յուրաքանչյուր հեկտարից ստացվել է 3 ցենտներ ավել տարեկան և 4 ցենտներ ավել ցորեն։

ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությունը նախատեսել է 1956 թվականի ընթացքում անջատ բերքահավաք կատարել 17



միլիոն հեկտար ցանքատարածության վրա։

Այս տարի առաջին անգամ հացահատիկային կուլտուրաների անջատ բերքահավաք են կատարում նաև մեր ռեսպուբլիկայի ՄՏ կայանները, որի համար ստացվել են ԺՌ—4,9 շարքային հնձիչներ և ՊՍ—2 հավաքիչներ։

ԺՌ—4,9 շարքային հնձիչը նախատեսված է հացահատիկային կուլտուրաներ հնձելու և այն մի շարքի վրա ծոր դնելու համար։ Այդ հնձիչը հիմնականում բաղկացած է հընձող մասից, որը նույնն է, ինչ որ Ս—6 կոմբայնի հեդերը (հնձիչը), և ընթացքային հարմարանքից։ Հնձիչը կցվում է «Ունիվերսալ», ՍՏԶ, «Բելոռուս», ԿԴՊ—35 և ԴՏ—54 տրակտորներին։

ՊՍ—2 հավաքիչը նախատեսված է հընձված հացահատիկը ծորերից հավաքելու և կալսման նպատակով այն ինքնագնաց Ս—4 կոմբայնին մատուցելու համար։

Անջատ բերքահավաքը հացահատիկային կուլտուրաների բերքահավաքի ոչ թե հիմնական, այլ օժանդակ եղանակ է։ Հիմնականը կոմբայնային եղանակն է, որն սկսվում է հացահատիկի լրիվ հասունացման մոմենտից։ Միայն այս երկու եղանակների ճիշտ զուգակցման դեպքում կարելի կլինի հասնել լավ արդյունքի։

———

# ԱՄՆ-Ը ՊՐԵԶԻԴԵՆՏԱԿԱՆ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՆԱԽՕՐՅԱԿԻՆ

Մ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Ախտայի շրջանի Արզական գյուղի ագիտկոլեկտիվի ղեկավար Հ. Մարգարյանի խընդրանքով տպագրում ենք հոդված ԱՄՆ-ի առաջիկա պրեզիդենտական ընտրությունների մասին:

*Այս տարվա նոյեմբերի 6-ին, Ամերիկայի Միացյալ Նահանգներում տեղի կունենան պրեզիդենտական ընտրություններ: Միաժամանակ կվերընտրվեն վիցեպրեզիդենտը, ներկայացուցիչների պալատի բոլոր անդամները և սենատորների կազմի մեկ երրորդը: Այդ կարևոր իրադարձությունը երկրի քաղաքական պարտիաների մեջ արդեն առաջ է բերել մեծ աշխուժություն: Ամեն մի պարտիա ձգտում է զանազան խոստումներով ավելի շատ ընտրողներ գրավել իր կողմը:*

*Սակայն պայքարը պրեզիդենտական պոստը գրավելու համար հիմնականում գնում է բուրժուական երկու խոշորագույն պարտիա-*



*ների՝ ռեսպուբլիկական (որին պատկանում է ներկայիս պրեզիդենտ Դ. Էյզենհաուերը) և դեմոկրատական պարտիաների միջև: Լինելով խոշորագույն կապիտալիստական միավորումների՝ տրեստների, սինդիկատների, զանազան կորպորացիաների շահերի արտահայտիչն ու պաշտպանը, և ամեն տեսակի օգնություն ու աջակցություն ստանալով նրանց կողմից, երկրի ներքին և արտաքին քաղաքականությանը հիմնականում տոն են տալիս այդ երկու պարտիաները:*

*Կա՞ արդյոք որևէ տարբերություն այդ երկու պարտիաների միջև: Հիմնականում՝ ոչ: Երկպարտիական սիստեմը, որը ԱՄՆ-ում հեգնանքով անվանում են «Կառուսելի սիստեմ», բնավ չի նշանակում, թե այսօրվա «օպոզիցիոն» պարտիան վաղը դառնալով կառավարական, որևէ լուրջ փոփոխություն է մտցնելու երկրի ներքին և արտաքին քաղաքականության մեջ: Բանը միայն նրանումն է, որ կառավարող պարտիան պատասխանատվություն է կրում իր վարած քաղաքականության համար: Իսկ այսպես կոչված «օպոզիցիոն» պարտիան օգտվելով այդ հանգամանքից, «խիստ» քննադատության է ենթարկում կառավարող պարտիայի քաղաքականության անհաջողությունները*







ընտրողներին իր կողմը գրավելու և ընտրությունների ժամանակ հաղթանակ տանելու համար։

Սակայն այս հանգամանքը ներկա ընտրությունների ժամանակ առանձնապես օգուտ բերել չի կարող «օպոզիցիոն» դեմոկրատական պարտիային, որովհետև 1954 թվականի միջանկյալ ընտրությունների ժամանակ դեմոկրատները կոնգրեսում մեծամասնություն կազմեցին։ Ուրեմն կառավարության ներկայիս քաղաքականության համար ոչ պակաս պատասխանատվություն կրելով, քան ռեսպուբլիկականները, նրանք ստիպված են «մեղմացնել» իրենց քննադատությունը և դրա փոխարեն ավելի շատ խոստումներ անել ապագայի վերաբերյալ։

Ինչևիցէ, երկու պարտիաներն էլ ստիպված են լուրջ եզրակացություններ հանել այն խոշորագույն փոփոխություններից, որոնք տեղի են ունեցել միջազգային հարաբերությունների ասպարեզում և որոնց կոպիտ անտեսումը ուժեղացնում է դժգոհությունը ամբողջ աշխարհում ԱՄՆ-ի արտաքին քաղաքականությունից։ Այդ փոփոխությունների շարքին են պատկանում. «Ժնևի ոգին», որը խոշոր նշանակություն ունեցավ «սառը պատերազմի» դեմ մղվող պայքարում և



հաստատեց այն սկզբունքը, որ պետությունների փոխհարաբերություններում բոլոր վիճելի հարցերը պետք է լուծվեն ոչ թե «ուժի դիրքերից» ելնող քաղաքականության կիրառումով, որը, ի դեպ, իրեն չարդարացրեց, այլ միանգամայն խաղաղ մեթոդներով, բանակցությունների ճանապարհով։ Այնուհետև, «Բանդունգի ոգին», որը արձանագրեց Ասիայի ու Աֆրիկայի ժողովուրդների ձեռք բերած մեծագույն նվաճումները ազգային անկախության նվաճման և ինքնուրույն քաղաքականություն վարելու ուղղությամբ և հռչակեց այն ճշմարտությունը, որ գաղութային քաղաքականությունը չի համապատասխանում ո՛չ ժամանակի ոգուն, ո՛չ ազատասեր ժողովուրդների կամքին և ո՛չ էլ խաղաղության պահպանման շահերին։ Եվ, վերջապես, ամենակարևոր փոփոխությունը այդ այն է, որ մեր օրերում սոցիալիզմը դարձել է արդեն համաշխարհային սիստեմ, և ինչպես սոցիալիստական սիստեմի, այնպես էլ կապիտալիստական սիստեմի գոյության համար այժմ կենսական նշանակություն ունի երկու սիստեմների խաղաղ գոյակցության սկզբունքի ճանաչման անհրաժեշտությունը։

Միջազգային կյանքում տեղի ունեցած

այս կարևորագույն փոփոխությունների թերագնահատումը ԱՄՆ-ի արտաքին քաղաքականությունը կանգնեցրել է լուրջ դժվարությունների առջև։ Ամբողջ աշխարհի ժողովուրդները, այդ թվում նաև ամերիկյան ժողովուրդը, գնալով է՛լ ավելի են համոզվում նրանում, որ ջերմամիջուկային զենքի օգտագործումն արգելելու սովետական պահանջը, իր զինված ուժերը մոտ 2 միլիոն մարդով կրճատելու և համապատասխանորեն սպառազինությունները նվազեցնելու փաստը, ինչպես նաև մի շարք խաղաղասիրական այլ միջոցառումների իրականացումը բոլորովին էլ չեն խոսում հօգուտ «սառը պատերազմի» կողմնակից ամերիկյան կառավարող շրջանների այն ստահոդ պնդումների, թե իբր Սովետական Միությունը խաղաղություն չի ձգտում։ Կամ, մի՞թե որևէ ժողովուրդ, այդ թվում նաև հենց ամերիկյան ժողովուրդը, կարող է հավատալ այն բանին, թե ռազմական բլոկների ստեղծման, թույլ զարգացած երկրներին օգնելու անվան տակ այդ երկրների ներքին գործերին միջամտելու, սպառազինությունները և զինված ուժերը ավելացնելու քաղաքականությունը, որ վարում է ԱՄՆ-ի կա-



ռավարությունը, նպաստում է խաղաղության ամրապնդմանը։

Գնալով ամերիկյան ժողովուրդը իրեն պարզ հաշիվ է տալիս, որ երկրի ղեկավար շրջանները հաճախ այն չեն անում, ինչը ելնում է ամբողջ ժողովրդի ու երկրի իսկական կենսական շահերից։ Նրանք դրանում առավել ևս համոզվում են, երբ երկրում օրեցօր ավելանում է գործազրկությունը և վատթարանում բնակչության կենսապայմանները։ Այսպես կոչված Ֆրանկլին Ռուզվելտի ֆոնդի հաշվումների համաձայն 24 միլիոն քաղաքային բնակչության կենսամակարդակը ցածր է անհրաժեշտ համարված մակարդակից։

Ծանր է գյուղական բնակչության դրությունը։ Գյուղատնտեսական գերարտադրության սուր ճգնաժամի հետևանքով քայքայվում են տասնյակ հազարավոր ֆերմերային տնտեսություններ։ Ֆերմերների եկամուտները վերջին 4 տարիների ընթացքում նվազել են 33 տոկոսով։ Այս է ամերիկյան ժամանակակից իրականությունը։

Դեմոկրատական և ռեսպուբլիկական պարտիաները ստիպված են հաշվի նստել այս հանգամանքների հետ։ Դեմոկրատական պարտիայի վերջերս տեղի ունեցած

համագումարը, որը նվիրված էր պրեզիդենտի և վիցեպրեզիդենտի թեկնածությունների առաջադրմանը, պարզ կերպով ցույց տվեց իրերի ու երևույթների նկատմամբ վերաբերմունքը փոխելու, այն ավելի ռեալիստական դարձնելու անհրաժեշտությունը: Համագումարը պրեզիդենտի թեկնածու առաջադրեց ոչ թե Հարրիմանին, որը ամբողջ աշխարհին հայտնի է իր ծայրահեղ ռեակցիոն հայացքներով, այլ Ստիվենսոնին, որը թեև կողմնակից է ամերիկյան կառավարության ներկայիս կուրսին, սակայն հանդես է գալիս Դալլեսի առավել ագրեսիվ արտահայտությունների ու նրա՝ ատոմային ռումբ ճռճելու քաղաքականության դեմ:

Էդլայ Ստիվենսոնը պատերազմից հետո ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի նիստերում հանդես է գալիս որպես ԱՄՆ-ի դելեգատ: 1948 թվականին նա ընտրվում է Իլլինոյս նահանգի նահանգապետ: 1953 թվականից Ստիվենսոնը ոչ մի պաշտոնական պոստ չի զբաղեցնում, այլ գլխավորում է դեմոկրատական պարտիան:

Ներքին քաղաքականության ասպարեզում հանդես գալով Տաֆտ-Հարտլիի ռեակցիոն օրենքի դեմ, իսկ արտաքին քաղաքականության ասպարեզում՝ պետական դեպարտա-



մենտի ծայրահեղ ագրեսիվ քաղաքականության դեմ, Ստիվենսոնը միշտ ընդգծում է իր «լիբերալիզմը»: Նա կապված է Չիկագոյի ֆինանսական տուզերի հետ և նրանցից ակտիվ աջակցություն է ստանում: Թերթերը միայն վերջերս հաղորդեցին, որ ռեսպուբլիկական պարտիայի նոր ավարտված համագումարը Միացյալ Նահանգների պրեզիդենտ վերընտրվելու համար առաջադրել է ներկայիս պրեզիդենտ Դուայտ Էյզենհաուերի թեկնածությունը, որը առողջանալուց հետո համաձայնվել է քվեարկվել առաջիկա ընտրություններում:

Թե այդ երկուսից ո՞վ կընտրվի ԱՄՆ-ի նոր պրեզիդենտ, դա հայտնի կդառնա միայն ընտրություններից հետո: Իսկ այժմ պարզ է մեկ բան՝ այն, որ «ուժի դիրքերից» եղող արտաքին քաղաքականությունը և «սառը պատերազմը» վերականգնելու փորձերը ոչ մի հեղինակություն չեն վայելում ժողովուրդների մեջ և կարող են է՛լ ավելի վնասել ամերիկյան արտաքին քաղաքականությանը: Մնում է միակ խելացի ուղին՝ հաշվի առնել միջազգային հարաբերություններում տեղի ունեցած փոփոխությունները:

---

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐԻ ԱԿԱՆԱՎՈՐ ԳՈՐԾԻՉՆԵՐԸ

## ՕՏՏՈ ԳՐՈՏԵՎՈԼ

Օտտո Գրոտևոլը ծնվել է 1894 թվականի մարտի 11-ին, Բրաունշվեյգ քաղաքում։ Նա իր պրոֆեսիայով տպագրիչ բանվոր է։

1910 թվականից մասնակցում է բանվորական շարժմանը։ Սոցիալ-դեմոկրատական պարտիայի մեջ մտել է 1912 թվականին։ 1921-ից մինչև 1924 թվականը եղել է Բրաունշվեյգի երկրամասի մինիստրների սոցիալ-դեմոկրատական կաբինետի անդամ, 1925-ից մինչև 1933 թվականը՝ Ռայխստագի դեպուտատ սոցիալ-դեմոկրատական պարտիայից։

Հիտլերյան տեռորի տարիներին Գրոտևոլը ակտիվ կերպով մասնակցում է հակաֆաշիստական շարժմանը, մի քանի անգամ ձերբակալվում է, գտնվում էր ընդհատակում։ Ֆաշիզմի ջախջախումից հետո Գրոտևոլը գլխավորում էր Արևելյան Գերմանիայի սոցիալ-դեմոկրատական պարտիան և այդ պոստում եռանդով պաշտպանում գերմա-



նական բանվոր դասակարգի միասնության գաղափարը։ 1948 թվականի ապրիլին, սոցիալ-դեմոկրատական և կոմունիստական պարտիաների միավորիչ համագումարում, Վիլհելմ Պիկի հետ միասին, ընտրվում է Գերմանիայի Սոցիալիստական միասնական պարտիայի երկու նախագահներից մեկը։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում Օտտո Գրոտևոլը շարունակ հանդես է եկել որպես Գերմանիայում դեմոկրատիայի ամրապնդման և երկրի խաղաղ ապագայի համար անխոնջորեն պայքարող մարտիկ։ 1948-ից մինչև 1949 թվականը նա եղել է Գերմանական ժողովրդական խորհրդի՝ Գերմանիայի դեմոկրատացման համար մղվող պայքարի ղեկավար օրգանի նախագահ։ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի ստեղծման պահից (1949 թվականի հոկտեմբեր), Օտտո Գրոտևոլը գլխավորում է ռեսպուբլիկայի կառավարությունը։ Նա Գերմանիայի Սոցիալիստական միասնական պարտիայի Կենտկոմի քաղբյուրոյի անդամ է և դեմոկրատական Գերմանիայի Ազգային ճակատի Ազգային խորհրդի անդամ։

# ՎԱԼՏԵՐ ՈՒԼԲՐԻԽՏ

Վալտեր Ուլբրիխտը ծնվել է 1893 թվականի հունիսի 30-ին, Լայպցիգում։ Աշխատանքային գործունեությունն սկսել է 14 տարեկան հասակից։ Դեռևս պատանեկական տարիներին մասնակցում է բանվորական շարժմանը։ 1912 թվականին նա դառնում է սոցիալ-դեմոկրատական պարտիայի անդամ։ Գերմանիայում տեղի ունեցած ռևոլյուցիոն իրադարձությունների օրերին Ուլբրիխտը ակտիվ կերպով մասնակցում է այդ իրադարձություններին։ Վ. Ուլբրիխտը Գերմանիայի Կոմունիստական պարտիայի հիմնադիրներից մեկն է։ 1923 թվականից նա Կոմունիստական պարտիայի Կենտկոմի անդամ է, 1925 թվականից՝ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, 1928 թվականից՝ Ռայխստագի կոմունիստական դեպուտատ։ Այն բանից հետո, երբ Հիտլերը իշխանության գլուխ է անցնում, Ուլբրիխտը դառնում է գերմանական ժողովրդի հակաֆաշիստական շարժման ղեկավարներից մեկը։ Նա Ինտերնացիոնալ բրիգադայի կազմում մասնակցում է Իսպանիայում մղվող մարտերին։ Հետագա տարիներին գտնվելով էմիգրացիայում, Ուլբրիխտը որպես Գերմանիայի Կոմունիստա-



կան պարտիայի Կենտկոմի քարտուղար, Վ. Պիկի հետ համատեղ ղեկավարում է գերմանական ժողովրդի հակաֆաշիստական պայքարը։

Ֆաշիզմի ջախջախումից հետո Ուլբրիխտը ամենաակտիվ կերպով մասնակցում է դեմոկրատական կարգի հաստատմանը Գերմանիայում։ Գերմանիայի Կոմունիստական պարտիայի Կենտկոմի քարտուղարի պաշտոնում՝ նա հետևողականորեն հանդես է գալիս բանվորական շարժման ուժերի միավորման օգտին։ 1946 թվականին նա ընտրվում է Գերմանիայի Սոցիալիստական միասնական պարտիայի վարչության անդամ և ապա նախագահի տեղակալ, իսկ 1950 թվականից՝ պարտիայի գլխավոր քարտուղար։ Գերմանիայի Սոցիալիստական միասնական պարտիայի (ԳՍՄՊ) 4-րդ համագումարից հետո, 1954 թվականին, Ուլբրիխտը ընտրվում է ԳՍՄՊ Կենտկոմի առաջին քարտուղար։ 1949 թվականից՝ ԳԴՌ-ի պրեմյեր-մինիստրի տեղակալ, ապա՝ պրեմյեր-մինիստրի առաջին տեղակալ, ժողովրդական պալատի դեպուտատ։

## ԼՈԹԱՐ ԲՈԼՑ

Լոթար Բոլցը ծնվել է 1903 թվականի սեպտեմբերի 3-ին, Գլեյվից քաղաքում, ժամագործի ընտանիքում։ Սովորել է Մյունխենի, Քիլի և Բրեսլավլի համալսարաններում, որտեղ ուսումնասիրել է իրավունքի, գրականության և արվեստի պատմության հարցեր։ 1926 թվականից աշխատել է որպես դատարանի ռեֆերենտ, իսկ հետագայում՝ փաստաբան։ Լինելով անպարտիական, քաղաքական դատավարությունների ժամանակ նա պաշտպանում էր հակաֆաշիստական շարժման մասնակիցներին, որի համար 1933 թվականին նացիստների կողմից զրկվեց փաստաբանությամբ զբաղվելու իրավունքից։ Նա ստիպված գաղթեց Լեհաստան, իսկ այնուհետև Սովետական Միություն։

Ֆաշիզմի ջախջախումից հետո հայրենիք վերադառնալով՝ Բոլցը ակտիվ կերպով մասնակցում է երկրի քաղաքական կյանքին և դառնում Գերմանիայի Ազգային-դեմոկրատական պարտիայի կազմակերպիչներից մեկը, որի անփոփոխ նախագահն է նա 1948 թվականից։ 1949 թվականից նա Գերմանական Ժողովրդական ժողովի նախագահության անդամ է։ ԳԴՌ-ի առաջին կառավարության մեջ նա գրավում էր վերականգնման



մինիստրի պոստը։ 1950 թվականից նա պրեմյեր-մինիստրի տեղակալ է, 1953 թվականին նշանակվել է արտաքին գործերի մինիստր։ Բոլցը դեմոկրատական Գերմանիայի Ազգային ճակատի Ազգային խորհրդի անդամ է, Ժողովրդական պալատի դեպուտատ, գերմանա-սովետական բարեկամության ընկերության նախագահի տեղակալ։ Որպես ԳԴՌ-ի արտաքին գործերի մինիստր՝ մասնակցել է միջազգային մի շարք խորհրդակցությունների։

## ԿԻՄ ԻՐ ՍԵՆ

Կիմ Իր Սենը ծնվել է 1912 թվականին Փխենյանից ոչ հեռու Մանգյոնդե գյուղում, չքավոր գյուղացու ընտանիքում։ Նրա հայրը, որ հակայապոնական ազգային-ազատագրական շարժման մասնակից էր, յապոնական իշխանությունների հետապնդումների պատճառով դառնում է վտարանդի և ընտանիքով տեղափոխվում Մանջուրիա։

Կիմ Իր Սենը դեռևս միջնակարգ դպրոցում սովորելու ժամանակ մտնում է ազգային-ազատագրական շարժման մեջ։ 1927 թվականին նա ձերբակալվում է և 1927—1928 թվականներին գտնվում բանտում։ Բանտից

դուրս գալուց հետո նա շարունակում է իր ընդհատակյա ռևոլյուցիոն աշխատանքը։ 1931 թվականին Կիմ Իր Սենը մտնում է կոմունիստական պարտիայի մեջ և դառնում կորեական պարտիզանական շարժման ղեկավարներից մեկը։ Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին կորեական պարտիզանները, չինական ժողովրդա-ռևոլյուցիոն ուժերի հետ համատեղ, համառ պայքար էին մղում յապոնական զավթիչների դեմ Մանջուրիայում և Կորեայի հյուսիսային շրջաններում։

Կորեայի ազատագրումից հետո Կիմ Իր Սենը դառնում է 1946 թվականին կազմակերպված Հյուսիսային Կորեայի Աշխատանքային պարտիայի ղեկավար, իսկ Հյուսիսային և Հարավային Կորեայի Աշխատանքային պարտիաների միավորումից հետո գլխավորում է Կորեայի միասնական Աշխատանքային պարտիան։

1948 թվականին Հյուսիսային և Հարավային Կորեայի ժողովրդի կողմից ընտրված Գերագույն ժողովրդական ժողովը Կիմ Իր Սենին հաստատում է Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայի մինիստրների կաբինետի նախագահ։



ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ՋՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ-ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

## ՌՈՒՄԻՆԻԱ

1956 թվականի օգոստոսի 23-ին լրացավ ֆաշիստական լծից Ռումինիայի ազատագրման 12-րդ տարեդարձը։ Ժողովրդա-դեմոկրատական կարգերի հաստատման հետևանքով նոր դարաշրջան բացվեց ռումինական ժողովրդի հետագա զարգացման և բարգավաճման համար։ Իր բանվորական պարտիայի ու ժողովրդական կառավարության անմիջական ղեկավարությամբ և Սովետական Միության եղբայրական, անշահախնդիր օգնությամբ, ռումինական ժողովուրդը լուրջ հաջողություններ է ձեռք բերել արդյունաբերության, հատկապես ծանր ինդուստրիայի, գյուղատնտեսության և ժողովրդական տնտեսության մյուս բոլոր բնագավառներում։

★ Ռեսպուբլիկայի հնգամյա պլանի հաջող կատարման հետևանքով արդյունաբերության արտադրանքը ավելացել է 96,2 տոկոսով, արտադրության միջոցների արտադրությունը՝ 101,4 տոկոսով, իսկ սպառման միջոցների արտադրությունը՝ 82,1 տոկոսով։

★ Ռումինական ժողովրդական Ռեսպուբլիկայի գլխավոր հարստություններից մեկն էլ նավթն է։ Վերջին տարիներում նավթարդյունաբերության մեջ մտցված ժամանակակից, բարձր տեխնիկայի հիման վրա նավթի հանույթը գնալով ավելանում է։ 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, նավթի հանույթը ավելացավ ավելի քան 2 անգամ, այսինքն հասավ 10,5 միլիոն տոննայի։ Ռեսպուբլիկայի գոյության տարիներին լայն ծավալ են ստացել հետախուզական աշխատանքները, որի շնորհիվ հայտնաբերվել են նավթային 18 նոր շրջան։ 1954 թվականին երկրում ամբողջ նավթահանույթի 70 տոկոսը ստացվել է նոր նավթահորերից։

★ Ռումինիայի ժողովրդական տնտեսության մեջ կարևոր տեղ է բռնում ածխի արդյունաբերությունը։ Շնորհիվ ածխահանքերի տեխնիկական վերակառուցման և նոր մեխանիզմների լայն կիրառման, զգալիորեն բարձրացել է ածխի հանույթը։ 1955 թվականին արդյունահանվել է 6,2 միլիոն տոննա ածուխ, որը 1938 թվականի համեմատությամբ ավել է 2 անգամ։ Ռումինական ածխարդյունաբերությունը առաջին անգամն է, որ երկրին տալիս է կոքսացող ածուխ։

★ Ներկայումս ռումինական կառավարությունը լուրջ ուշադրություն է դարձնում էլեկտրաարդյունաբերության զարգացման վրա։ Նոր էլեկտրակայանների գործարկման և հին էլեկտրակայանների վերակառուցման հետևանքով 1955 թվականին էլեկտրաէներգիայի ար-



տադրությունը երկրում հասավ 4,3 միլիարդ կիլովատ ժամի, որը 3,8 անգամ ավել է, քան արտադրվել է 1938 թվականին։ Այս հանգամանքը հնարավորություն է տալիս էլեկտրաէներգիայով ապահովել ոչ միայն արդյունաբերական ձեռնարկությունները, այլև ընդարձակել բնակավայրերի էլեկտրիֆիկացումը և այն լայնորեն օգտագործել կենցաղում։

★ Երկրում սկսել է բուռն թափով զարգանալ սև և գունավոր մետաղների արդյունաբերությունը։ 1955 թվականին, 1938 թվականի համեմատությամբ, երկաթի հանքաքարի հանույթը ավելացել է 5 անգամ, իսկ մարգանեցինը՝ 6,5 անգամ։ Հետպատերազմյան տարիներին ժողովրդական կառավարության կողմից խոշոր կապիտալ ներդրումների և Սովետական Միության բազմակողմանի օգնության շնորհիվ Ռումինիայում ներկայումս ստեղծվել է մետալուրգիական արդյունաբերության ամուր բազա։ Դրա հետևանքով արդեն 1948 թվականին մետաղի արտադրությունը գերազանցեց նախապատերազմյան մակարդակը։ 1955 թվականին չուգունի ձուլումը կազմեց 575 հազար տոննա կամ 4,3 անգամ ավելի, քան 1938 թվականին, իսկ պողպատի արտադրությունը՝ 765 հազար տոննա կամ 2,7 անգամ ավելի, քան 1938 թվականին։

★ Ռումինական ժողովրդական Ռեսպուբլիկան խոշոր հաջողությունների է հասել հայրենական մեքենաշինության ստեղծման ասպարեզում։ Մինչ պատերազմը Ռումինիան դրսից ներմուծում էր իրեն անհրաժեշտ

մեքենաների և սարքավորումների 99 տոկոսը։ Ներկայումս Ռումինիան ունի իր սեփական նավթային, տրանսպորտային, գյուղատնտեսական և ժողովրդական տնտեսության այլ ճյուղերի մեքենաշինության արդյունաբերությունը։ 1948—1954 թվականների ժամանակաշրջանում երկրում յուրացվել է բարձր արտադրողականություն ունեցող ավելի քան 160 տեսակի մեքենաների և մեխանիզմների արտադրությունը։

★ Արագ վերելք է ապրում նաև Ռումինիայի գյուղատնտեսությունը։ Ներկայումս Ռումինիայում գործում է 221 ՄՏ կայան՝ 15 հազար տրակտորով։ Եթե դրան ավելացնենք պետական տնտեսություններում, գյուղական կոլեկտիվ տնտեսություններում և այլ կազմակերպություններում եղած տրակտորները, ապա դրանց թիվը հասնում է 30 հազարի։ Բացի դրանից, Ռումինիայի գյուղատնտեսության մեջ գործում են 1,5 հազար կոմբայն, 15 հազար հացահատիկային կալսիչ և բազմաթիվ այլ գյուղատնտեսական մեքենաներ։

★ Անցյալ տարի Ռումինիայի գյուղացիությունը աճեցրել և հավաքել է 9 միլիոն տոննա հացահատիկ, որից 6 միլիոնը՝ եգիպտացորեն։ Եգիպտացորենի ցանքատարածությունը երկրում ավելացել է կես միլիոն հեկտարով։ Ռումինիայի գյուղացիությունը պարտավորվել է այս տարի հավաքելու 10 միլիոն տոննա հացահատիկ։

★ Գյուղատնտեսության մեջ լայն կիրառում է գըտ-



նում սովետական առաջավոր ագրոտեխնիկան։ 1953 թվականի համեմատությամբ ներկայումս քառակուսի-բնային եղանակով կատարվող ցանքը ավելացել է 8 անգամ։ Զգալի չափով ավելացել է նաև բամբակի, շաքարի ճակնդեղի և մյուս տեխնիկական կուլտուրաների բերքատվությունը։ Ռումինական բամբակագործները վերջին տարիներում 8 անգամ ավելացրել են գործարաններին հանձնվող բամբակի հումքը։

★ Համոզվելով կոլեկտիվ տնտեսություն վարելու առավելությունների մեջ, գնալով աճում է ռումինական գյուղացիության մուտքը գյուղատնտեսական արտադրական միավորումներում։ Ներկայումս երկրում գյուղատնտեսական կոլեկտիվների և հողը միասին օգտագործելու ընկերությունների թիվը հասնում է 5.500-ի։ Նրանց մեջ միավորված են ավելի քան 360 հազար գյուղացիական տնտեսություններ, որոնք իրենց տրամադրության տակ ունեն մոտ 1 միլիոն 300 հազար հեկտար վարելահող։

### ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ԿՈՐԵԱ

Սովետական Բանակի անմիջական օգնությամբ գաղութային ճնշումից ազատագրված կորեական հերոսական ժողովուրդը հսկայական աշխատանք է կատարում երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման ուղղությամբ։ Հյուսիսային Կորեայում ներկայումս լայն ծավալ է ստացել արդյունաբերական օբյեկտների, երկաթուղիների, խճուղային ճանապարհ-

ների, կուլտուր-լուսավորական օջախների և բնակելի
շենքերի շինարարությունը։ Կորեական ժողովուրդը
Սովետական Միության օգնությամբ արագորեն վե-
րացնում է իմպերիալիստների սանձազերծած պատե-
րազմի հասցրած վերքերը և ստեղծագործական աշխա-
տանքով կերտում իր լուսաշող ապագան։

★ Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբ-
լիկայի կառավարությունը ամեն կերպ օգնում է բա-
րելավելու աշխատավոր գյուղացիության տնտեսական
դրությունը։ Ընդառաջելով գյուղացիությանը, կառա-
վարությունը զիջել է պատերազմից հետո կուտակված
նրանց պարտքերը, իջեցրել պետությանը հանձնվող
գյուղատնտեսական մթերքների նորմաները և հարկե-
րի չափը, գյուղացիներին բաց է թողել սերմացու հա-
ցահատիկ և դրամական վարկեր։

★ Երկրում գնալով աճում և ամրապնդվում են
գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվները։
Ներկայումս Կորեայում այդ կոոպերատիվների թիվը
հասնում է 15 հազարի, որոնց մեջ ընդգրկված է ամ-
բողջ գյուղացիական տնտեսությունների ավելի քան
65 տոկոսը, և որոնք զգալի աշխատանք են կատարել
հայահատիկի ու գյուղատնտեսական մթերքների ար-
տադրությունը ավելացնելու գործում։

★ Վերջին տարիներում խոշոր աշխատանք է կա-
տարվել արդյունաբերության զարգացման գծով։ Կա-
ռուցվել են 71 բոլորովին նոր և լրիվին վերականգ-
նվել են 236 խոշոր ու միջակ արդյունաբերական



ձեռնարկություններ։ Վերականգնված մարտենյան վա-
ռարանները երկրին արդեն տվել են առաջին սեփա-
կան պողպատը։ Կառուցվում է մեքենաշինական խո-
շոր գործարան, որի սարքավորումը ստացվել է Գեր-
մանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայից, Չեխո-
սլովակիայից, Հունգարիայից և մյուս եղբայրական
ժողովրդա-դեմոկրատական երկրներից։ Գործարանը,
որի առանձին ցեխեր արդեն սկսել են գործել, սար-
քավորումներ է մատակարարելու ռեսպուբլիկայի մե-
տաղամշակման բոլոր ձեռնարկություններին։

★ 1955 թվականի վերջերին արդյունաբերական
արտադրանքի ծավալը, 1949 թվականի մակարդակի
համեմատությամբ կազմեց 156 տոկոս։ Գյուղատնտե-
սությունը իր ցանքատարածությունների չափերով հա-
սել է 1949 թվականի մակարդակին։ Ոռոգելի տարա-
ծությունները 1954—1955 թվականներին ավելացել են
99 հազար տեմբոյով (տեմբոն հավասար է 0,99 հեկ-
տարի)։

★ Վերականգնված է 3,5 միլիոն քառ. մետր բնա-
կելի տարածություն և 1285 դպրոցական շենք։ Գո-
յություն ունեցող 16 բարձրագույն ուսումնական հաս-
տատությունները ապահովված են նոր շենքերով։
Մայրաքաղաք Փխենյանում, որը փաստորեն վերած-
ված էր ավերակների կույտի, արդեն վերականգնված
է 20 հազար բնակելի տուն։

---

# ԻՆԴՈՆԵԶԻԱ

(Տեղեկանք)

*Բնությունը առատորեն է օժտել ինդոնեզական հողը։ Ձգվելով հասարակածի երկայնքով Մալայան Արշիպելագի ավելի քան երեք հազար կղզիների վրա՝ Ինդոնեզիան իրենից ներկայացնում է տաք ծովերի ջրերով ողողվող վիթխարի արևադարձային այգու մի պատկեր։ Նրա ամենախոշոր կղզիներն են Սումատրան, Ճավան, Բոռնեոն (Կալիմանտանը) և Ցելեբեսը (Սուլավեսին)։ Ինդոնեզիայի ռեսպուբլիկայի մայրաքաղաքը՝ Ջակարտան գտնվում է Արևմտյան Ճավայում, որը առավել խիտ բնակեցված կղզի է. այդ կղզում ապրում են 52,5 միլիոն մարդ։*

*Ինդոնեզիայի գետերը հարուստ են ձկներով, իսկ անտառներն ու այգիները՝ պտուղներով։ Պլանտացիաներում աճում են կաուչուկ, ծխախոտ, թեյ, կոֆե, կակաո, խինինի ծառեր, կոկոսյան և յուղատու արմավենիներ, զանազան թելատու բույսեր, պղպեղ և այլ համեմունքներ։ Ինդոնեզցիները վաղուց իվեր աճեցնում են բրինձ, որը հանդիսանում*



*է բնակչության գլխավոր սննդամթերքը։ Այստեղ շատ տարածված են եգիպտացորենի և բատատի (քաղցր կարտոֆիլի) ցանքերը։*

*Ինդոնեզիան ունի անագի, ածխի, նավթի և զանազան մետաղահանքերի մեծ պաշարներ։*

*Ինդոնեզցիները հին կուլտուրայի տեր ժողովուրդ են. նրանց վաղուց հայտնի էին ամենատարբեր արհեստներ, ոռոգելի հողագործությունը, ծովագնացությունը։ Սակայն Ասիայի մյուս երկրների նման, Ինդոնեզիան եվրոպական գաղութարարների կողմից մի քանի դարով հետ մղվեց իր զարգացման ճանապարհին։*

*16-րդ դարում Հոլանդական նվաճողները առաջին անգամ ոտք դրին Մալայան Արշիպելագի ափերը։ Բայց զավթիչները երբեք հանգիստ չապրեցին ինդոնեզական ժողովրդի հողի վրա։ Ինդոնեզցիների ազգային-ազատագրական պայքարը հատկապես լայն մասշտաբ ընդունեց անցյալ դարի երկրորդ կեսից։ Բավական է ասել, որ չնայած գաղութարարների դաժան տեռորին, Հյուսիսային Սումատրայում բնակվող ցեղերի ապստամբությունը տևեց տասներեք տարի։*

*20-րդ դարի սկզբներից, Ինդոնեզիայում առաջ են գալիս մի շարք կազմակերպու-*

թյուններ, որոնք միավորում էին գաղութա-
յին ստրկության դեմ պայքարող մարտիկ-
ներին: Հոլանդական Հնդկաստանի (ինչ-
պես այն ժամանակ կոչվում էր Ինդոնե-
զիան) երիտասարդ բանվոր դասակարգի
ընդերքից 1920 թվականին ծնվում է Կո-
մունիստական պարտիան: Ներկայումս
ԻԿՊ-ում, ինչպես վերջերս հայտարարեց նրա
գլխավոր քարտուղար ընկ. Այդիտը, հաշվ-
վում է ավելի քան մեկ միլիոն երկու հար-
յուր հազար մարդ:

Ինդոնեզիայի անկախության հռչակման
պահից՝ 1945 թվականի օգոստոսի 17-ից
մինչև հիմա օտարերկրյա գաղութարարները
չեն դադարեցնում ինդոնեզական պետակա-
նությունը օչնչացնելու իրենց փորձերը: Երի-
տասարդ ռեսպուբլիկայի դեմ պայքարում
էին Ճավայում ափ իջած անգլիական զոր-
քերը և Հոլանդիայի զինված ուժերը, որոնք
օկուպացրել էին երկրի շատ շրջաններ և
այնտեղ ստեղծել մարիոնետային պետու-
թյուններ: Պաշտպանություն գտնելով ԱՄՆ-ի
ագրեսիվ շրջանների կողմից, Հոլանդական
իմպերիալիստները լայն ռազմական հարձա-
կում ծավալեցին և 1948 թվականի դեկտեմ-
բերին զավթեցին ռեսպուբլիկայի այն ժա-
մանակվա մայրաքաղաք Ջոկյակարտան:



Պրեզիդենտ Սուկառնոն, ինչպես նաև կառավարության անդամների մեծամասնությունը ձերբակալվեցին:

Բայց ինդոնեզական ժողովուրդը զենքը վայր չդրեց: Ինդոնեզիայի կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ամրանում էին երկրի դեմոկրատական կազմակերպությունները և առաջին հերթին, ՍՈԲՍԻ-ն՝ Ինդոնեզիայի պրոֆմիությունների Կենտրոնական կազմակերպությունը, որը ներկայումս միավորում է ավելի քան 2 և կես միլիոն աշխատավորներ: Տարբեր գյուղացիական կազմակերպություններ նույնպես ակտիվորեն ներգրավվեցին ինտերվենտների դեմ մղվող ժողովրդական պայքարի մեջ: Հոլանդական իշխանությունները հարկադրված եղան Ճավայի մի փոքրիկ մասում վերականգնել ռեսպուբլիկան և բանտից ազատել Սուկառնոյին ու կառավարության անդամներին:

Խաղաղասեր պետությունների, առաջին հերթին ՍՍՌՄ-ի և Հնդկաստանի նախաձեռնությամբ, ՄԱԿ-ի Անվտանգության խորհրդում շատ անգամ բարձրացվեց Ինդոնեզիայում կատարված ինտերվենցիայի հարցը: Բայց ԱՄՆ-ի ճնշմամբ այդ հարցի բավարար լուծումը ձախողվեց: Ամերիկացիների նախաձեռնությամբ և նրանց ներկայա-

ցուցիչների մասնակցությամբ ստեղծված «բարի ծառայությունների հանձնաժողովը» վերածվեց մի զենքի, որը պաշտպանում էր իմպերիալիստների շահերը Ինդոնեզիայում:

1949 թվականի օգոստոսին այդ հանձնաժողովի օժանդակությամբ Հաագայում բացվեց «Կլոր սեղանի կոնֆերանսը»: Արյունաքամ եղած Ինդոնեզական Ռեսպուբլիկային հարկադրեցին ընդունել ստրկացուցիչ պայմաններ, որոնք հոլանդացիների ձեռքում թողնում էին ուժեղ տնտեսական դիրքեր: Բացի դրանից, «Կլոր սեղանի կոնֆերանսը» պահպանեց հոլանդական սուվերենիտետը Ինդոնեզիայի անքակտելի մասի՝ Արևմտյան Իրիանի վրա:

Բոլոր այդ տարիներին ինդոնեզական ժողովուրդը չդադարեցրեց պայքարը ընդդեմ «Կլոր սեղանի կոնֆերանսի» որոշումների: Նույն թվի փետրվարին Ինդոնեզիան հայտարարեց, որ խզում է հարկադրաբար իրեն փաթաթված «Հոլանդա-ինդոնեզական դաշինքը» և այժմյանից իրեն ազատ է համարում այն բոլոր պարտավորություններից, որոնք բխում էին «Կլոր սեղանի կոնֆերանսի» որոշումներից: Իսկ 1956 թվականի օգոստոսի 4-ին, Ինդոնեզիայի կառավարությունը, որոշում ընդունեց «այլևս չճանա-



չել և չվճարել Հոլանդիայի ինդոնեզական պարտքերը»: Այդ «պարտքերը» կազմում էին մեկ միլիարդ դոլլար և հանդիսանում էին Ինդոնեզիայի վրա դրված մի կոնտրիբուցիա՝ հոլանդացիների այն ռազմական «ծախսերը» ծածկելու համար, որոնք կատարվել էին իր երկրի անկախության համար պայքարի ելած ինդոնեզական ժողովրդին ճնշելու նպատակով:

Ինդոնեզական ժողովուրդը պահանջում է լիովին լիկվիդացնել ուժի միջոցով իրեն փաթաթած «Կլոր սեղանի կոնֆերանսի» որոշումները, և իր հայրենիքի հետ վերամիավորել Արևմտյան Իրիանը: Հոլանդիայի կողմից բռնությամբ զավթված այդ շրջանը հարուստ է նավթով և զանազան օգտակար հանածոներով: Վերջին տարիներում Արևմտյան Իրիանում հիմնվեցին մի շարք ամերիկյան կոմպանիաներ: Հոլանդացիներն այստեղ պահում են խոշոր ռազմական ուժեր, իսկ ամերիկացիները կառուցում օդանավակայաններ և բազաներ: «Ամերիկացիները,— վերջերս գրում էր ինդոնեզական «Սինպո» թերթը,— ցանկանում են Արևմտյան Իրիանը վերածել ՍԵԱՏՕ-ի ագրեսիվ բազայի»:

Ամերիկայի Միացյալ Նահանգներ վեր-

ջերս կատարած իր ուղևորության ժամանակ Ինդոնեզական Ռեսպուբլիկայի պրեզիդենտ Սուկառնոն հայտարարեց, որ Ինդոնեզիայի ամենահրատապ խնդիրներից մեկը հանդիսանում է գաղութային լծից Արևմտյան Իրիանի ազատագրումը։

Ժամանակակից Ինդոնեզիան եռանդագին կերպով հաղթահարում է երկարատև գաղութային տիրապետության հետևանքները։ Ամրապնդելով իր պետականությունը, Ինդոնեզական Ռեսպուբլիկան անցյալ տարվա սեպտեմբերին անցկացրեց առաջին ընդհանուր պառլամենտական ընտրությունները։ Ընտրությունների ժամանակ ձայների ճնշող մեծամասնություն ստացան 4 պարտիաներ՝ Ազգայինը, Մաշումի մուսուլմանական պարտիան, Երկրորդ մուսուլմանական պարտիան՝ Նախդատուլ Ուլաման և Կոմունիստական պարտիան։ Պառլամենտական տեղերը բաշխվեցին հետևյալ կերպ. Ազգային պարտիան և Մաշումին ստացան 57-ական մանդատ, Նախդատուլ Ուլաման՝ 45 և Կոմունիստական պարտիան՝ 39 մանդատ։ Սակայն, չնայած այն բանին, որ Ինդոնեզիայի Կոմունիստական պարտիայի թեկնածուների օգտին քվեարկել են 6 միլիոն 177 հազար ընտրողներ, նա մինիստրների կաբինետում պորտֆելներ չունի։



Ինդոնեզական կառավարությունում, որը գլխավորում է Ազգային պարտիայի ականավոր գործիչ Ալի Սաստրոամիջոյոն, ներկայացված են 8 պարտիաներ։

Կոմունիստական պարտիան պաշտպանում է կառավարության առաջադիմական ծրագիրը և ձգտում է հասնել ազգային բոլոր ուժերի համախմբմանը՝ գաղութարարության մնացորդներն արմատախիլ անելու, ազգային զարգացման և ինդոնեզական ժողովրդի կենսական բարեկեցությունը և կուլտուրան բարձրացնելու համար մղվող պայքարում։

Ինդոնեզիայի բնակչության հիմնական զանգվածը զբաղվում է գյուղատնտեսությամբ։ Գյուղացիների մեծամասնությունն ունի ոչ-մեծ հողակտորներ։ Հողազուրկ գյուղացիների թիվը հասնում է 9 միլիոն մարդու։

Օտարերկրյա կապիտալը երկար ժամանակ քայքայում էր երկրի գյուղատնտեսությունը, արտահանության կարիքներին հարմարեցնելով գյուղատնտեսական արտադրությունը։ Ինդոնեզիայում անբավարար քանակով էր արտադրվում պարենային կուլտուրաներ։ Դրա հետևանքով երկիրը մինչև այժմ ստիպված է ներմուծել մի շարք պա-

բնական ապրանքներ, և առաջին հերթին բրինձ։

Ռեսպուբլիկայի կառավարությունը մեծ ուշադրություն է նվիրում գյուղատնտեսության զարգացմանը։ Հաստատվել է հնգամյա պլան, որը նախատեսում է արդեն այս տարվանից դադարեցնել պարենային ապրանքների ներմուծումը։

Ժամանակակից Ինդոնեզիայի էկոնոմիկայում դեռևս շատ ամուր են օտարերկրյա, առանձնապես Հոլանդական կապիտալի դիրքերը։ Օտարերկրյա մոնոպոլիաները վերահսկում են Ինդոնեզիայի խոշորագույն ձեռնարկությունները։ Ինդոնեզիայի ամբողջ նավթի հանույթի համարյա կեսը ընկնում է ամերիկյան «Ստանդարդ օյլ» (Նյու Ջերսի) նավթային մոնոպոլիային և ԱՄՆ-ի մյուս կոմպանիաներին։ Այստեղ մեծ կապիտալ ներդրումներ ունեն անգլո-հոլանդական «Ռոյալ Դատչ-շել» կոմպանիան, անգլո-հոլանդական «Յունիլևերս» մոնոպոլիան, հոլանդական «Օրդերնեմսբոնդ» և «Սեյկեր» ֆերմաները, անգլիական «Հարրիսոն էնդ Կրոսֆիլդ» ֆիրման և ուրիշները։

Ինդոնեզական կառավարության ձեռքին է գտնվում անագի հանույթի արդյունաբերությունը։ Կառավարությունն ազգայնացրել է



Սումատրա կղզու ածխահանքերը, որոնք առաջ պատկանում էին Հոլանդիային։ Ստեղծված է նավթահանման ազգային կոմպանիա, պետական միջոցներ են բաց թողնված Կենտրոնական Ճավայի պղնձահանքերը վերականգնելու համար։

Ինդոնեզական մի ամբողջ շարք ֆիրմաներ այժմ հետախուզական աշխատանքներ են տանում օգտակար հանածոներ հայտնաբերելու նպատակով։

Ինդոնեզական կառավարությունը իր ջանքերն ուղղում է ազգային ինդուստրիա ստեղծելու գործին։ Ռեսպուբլիկայի Պետական պլանային խորհուրդը մշակել է Ինդոնեզիայի՝ 1956—1960 թվականների առաջին հնգամյա պլանը։

Ինդոնեզիան շահագրգռված է տնտեսական օգնություն ստանալու մեջ, որպեսզի կենսագործի իր առջև կանգնած խնդիրները։ Սակայն, ինչպես բազմիցս հայտարարել են Ռեսպուբլիկայի պրեզիդենտը և մյուս պետական գործիչները, այդ օգնությունն Ինդոնեզիայի համար ընդունելի է միայն այն դեպքում, եթե նա չի ուղեկցվում քաղաքական բնույթ կրող որևէ պայմանով։ Բացառապես փոխադարձ շահի վրա հիմնված այդպիսի անշահախնդիր օգնություն են ցույց տալիս մյուս երկրներին Սովետական Միու-

թյունը և ժողովրդական դեմոկրատիայի երկրները։

Ինդոնեզիան ծավալում է տնտեսական հարաբերությունները դեմոկրատական լագերի երկրների հետ։

Ինդոնեզիայի Ռեսպուբլիկան եղել է Ասիայի ու Աֆրիկայի երկրների պատմական Կոնֆերանսի նախաձեռնողներից և կազմակերպիչներից մեկը, կոնֆերանս, որը տեղի ունեցավ Բանդունգում՝ Արևմտյան Ճավայի այդ գեղեցիկ քաղաքում։ Այդ կոնֆերանսը, որին մասնակցում էին ասիական ու աֆրիկյան կոնտինենտների 29 երկրների պետական գործիչներ, վճռականորեն հայտարարեց, որ «Գաղութարարությունը հանդիսանում է չարիք, որը պետք է արագորեն վերացնել»։

Սուեզի ջրանցքի վերաբերյալ Լոնդոնի կոնֆերանսում Ինդոնեզիայի դիրքը, ինչպես և նրա խաղաղասիրական դիրքը ՄԱԿ-ում և բազմաթիվ միջազգային կազմակերպություններում, առաջ է բերում բոլոր ժողովուրդների հարգանքն ու երախտագիտությունը։

Ինդոնեզիան իրենից ներկայացնում է այնպիսի մի երկրի ծաղկման վառ օրինակ, որը իր ուսերից թոթափելով գաղութարարության լուծը, հաստատակամորեն կանգնել է ազգային զարգացման ուղու վրա։

---

## СОДЕРЖАНИЕ






Խմբագիր՝ Կ. ԲԶՆՈՒՆԻ

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 17 1956 г.

ՎՖ 05598 Պատվեր 695 Տիրաժ 8.440

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 50 կոպ.։